Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ



№ 6 ՄԱՐՏ 1950

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---


Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿ(բ)Պ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին, Հեռախոս 2—52—78:


---

## ՍՍՌՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԸՆՏՐԱԿԱՆ ՀԱՆՁՆԱԺՈՂՈՎԻ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆԻՑ

### 1950 ԹՎԱԿԱՆԻ ՄԱՐՏԻ 12-Ի ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱՐԴՅՈՒՆՔՆԵՐԻ ԵՎ ԴԵՊՈՒՏԱՏՆԵՐԻ ԱՆՎԱՆԱԿԱՆ ՑՈՒՑԱԿԻ ՄԱՍԻՆ

Կենտրոնական ընտրական հանձնաժողովը բոլոր Օկրուգային ընտրական հանձնաժողովներից ստացել է ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունների մանրամասն արդյունքները: Պարզվել է, որ բոլոր ընտրական օկրուգներում ընտրողների ընդհանուր թիվը վերջնականապես կազմում է 111.116.373 մարդ, որոնցից ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատների ընտրություններին մասնակցել են 111.090.010 մարդ կամ ընտրողների ընդհանուր թվի 99,98 տոկոսը:

ՄԻՈՒԹՅԱՆ ՍՈՎԵՏԻ ընտրությունների բոլոր ընտրական օկրուգներում կոմունիստների և անպարտիականների բլոկի թեկնածուների օգտին ձայն են տվել 110.788.377 մարդ, որը կազմում է քվեարկությանը մասնակցած




ընտրողների ընդհանուր թվի 99,73 տոկոսը: Միության Սովետի դեպուտատության թեկնածուներին դեմ են քվեարկել 300.146 մարդ կամ քվեարկությանը մասնակցած ընտրողների ընդհանուր թվի 0,27 տոկոսը: «ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունների Կանոնադրության» 88-րդ հոդվածի հիման վրա անվավեր են ճանաչվել 1.487 բյուլետեն:

ԱԶԳՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՍՈՎԵՏԻ ընտրությունների բոլոր ընտրական օկրուգներում կոմունիստների և անպարտիականների բլոկի թեկնածուների օգտին ձայն են տվել 110.782.009 ընտրող, որը կազմում է քվեարկությանը մասնակցած ընտրողների ընդհանուր թվի 99,72 տոկոսը: Ազգությունների Սովետի դեպուտատության թեկնածուներին դեմ են քվեարկել 306.382 մարդ կամ քվեարկությանը մասնակցած ընտրողների ընդհանուր թվի 0,28 տոկոսը: «ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունների Կանոնադրության» 88-րդ հոդվածի հիման վրա անվավեր են ճանաչվել 1.619 բյուլետեն:

Միության Սովետի և Ազգությունների Սովետի ընտրությունների արդյունքները ըստ Միութենական ռեսպուբլիկաների բնութագրվում են հետևյալ տվյալներով (տես աղյուսակը)․



և անպարտիականների բլոկի
ի օգտին ձայն են տվել

| | Ազգությունների Սովետում | |
|---|---|---|
| l ı ա- | Բացարձակ թվերով | Տոկոսներով ընտրողների թվի համեմատությամբ |
| 3 | 63.299.582 | 99,64 |
| 5 | 22.855.755 | 99,85 |
| 0 | 4.722.306 | 99,89 |
| 0 | 3.493.041 | 99,86 |
| 8 | 3.847.841 | 99,69 |

| Միութենական ռեսպուբլիկայի անունը | Ընտրողների թիվը | Մասնակցել են քվեարկությանը | | Կոմունիստների և անկուսակցականների բլոկի թեկնածուների օգտին ձայն են տվել | | | |
|---|---|---|---|---|---|---|---|
| | | | | Միության Սովետում | | Ազգությունների Սովետում | |
| | | Բացարձակ թվերով | Տոկոսներով ընտրողների թվի համեմատությամբ | Բացարձակ թվերով | Տոկոսներով ընտրողների թվի համեմատությամբ | Բացարձակ թվերով | Տոկոսներով ընտրողների թվի համեմատությամբ |
| ՌՍՖՍՌ | 63.544.390 | 63.528.810 | 99,98 | 63.295.694 | 99,63 | 63.299.582 | 99,64 |
| Ուկրաինական ՍՍՌ | 22.893.872 | 22.889.148 | 99,98 | 22.854.550 | 99,85 | 22.855.755 | 99,85 |
| Բելոռուսական ՍՍՌ | 4.727.950 | 4.727.554 | 99,99 | 4.722.835 | 99,90 | 4.722.306 | 99,89 |
| Ուզբեկական ՍՍՌ | 3.498.295 | 3.497.962 | 99,99 | 3.494.316 | 99,90 | 3.493.041 | 99,86 |
| Ղազախական ՍՍՌ | 3.859.970 | 3.859.715 | 99,99 | 3.851.034 | 99,78 | 3.847.841 | 99,69 |
| Վրացական ՍՍՌ | 2.179.327 | 2.179.294 | 99,99 | 2.178.928 | 99,98 | 2.178.632 | 99,97 |
| Ադրբեջանական ՍՍՌ | 1.677.356 | 1.677.332 | 99,99 | 1.675.666 | 99,90 | 1.675.210 | 99,87 |
| Լիտվական ՍՍՌ | 1.599.438 | 1.597.561 | 99,88 | 1.593.798 | 99,76 | 1.593.364 | 99,74 |
| Մոլդավական ՍՍՌ | 1.354.049 | 1.353.595 | 99,97 | 1.351.395 | 99,84 | 1.351.083 | 99,81 |
| Լատվիական ՍՍՌ | 1.359.051 | 1.358.294 | 99,94 | 1.357.344 | 99,93 | 1.357.368 | 99,93 |
| Կիրգիզական ՍՍՌ | 977.407 | 977.230 | 99,98 | 974.791 | 99,75 | 973.199 | 99,59 |
| Տաջիկական ՍՍՌ | 856.545 | 856.529 | 99,99 | 855.834 | 99,92 | 855.114 | 99,83 |
| Հայկական ՍՍՌ | 769.782 | 769.754 | 99,99 | 769.400 | 99,95 | 769.180 | 99,93 |
| Թուրքմենական ՍՍՌ | 725.232 | 725.117 | 99,98 | 724.458 | 99,91 | 723.205 | 99,74 |
| Էստոնական ՍՍՌ | 799.776 | 798.330 | 99,82 | 795.386 | 99,63 | 794.926 | 99,58 |
| Կարելո-Ֆիննական ՍՍՌ | 293.933 | 293.785 | 99,95 | 292.948 | 99,72 | 292.203 | 99,46 |
| Ընդամենը ՍՍՌՄ-ում | 111.116.373 | 111.090.010 | 99,98 | 110.788.377 | 99,73 | 110 782.009 | 99,72 |



**ԱՎՏՈՆՈՄ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՆԵՐԻՑ, ԱՎՏՈՆՈՄ ՄԱՐԶԵՐԻՑ ԵՎ ԱԶԳԱՅԻՆ ՕԿՐՈՒԳՆԵՐԻՑ** Ազգությունների Սովետի ընտրությունների բոլոր ընտրական օկրուգներում 8.726.204 ընտրողների ընդհանուր թվից քվեարկությանը մասնակցել է 8.723.874 մարդ կամ ընտրողների ընդհանուր թվի 99,97 տոկոսը: Այդ օկրուգներում կոմունիստների և անպարտիականների բլոկի թեկնածուների օգտին ձայն է տվել 8.648.806 մարդ կամ քվեարկությանը մասնակցած ընտրողների ընդհանուր թվի 99,55 տոկոսը: Ավտոնոմ ռեսպուբլիկաներից, ավտոնոմ մարզերից և ազգային օկրուգներից Ազգությունների Սովետի դեպուտատության թեկնածուներին դեմ է քվեարկել 38.953 մարդ: «ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունների Կանոնադրության» 88-րդ հոդվածի հիման վրա անվավեր է ճանաչվել 115 բյուլետեն:

Կենտրոնական ընտրական հանձնաժողովը «ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունների Կանոնադրության» 38-րդ հոդվածի հիման վրա քննելով յուրաքանչյուր ընտրական օկրուգի նյութերը՝ առանձին վերցրած, արձանագրեց ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատների ընտրությունը բոլոր 1.316 ընտրական օկրուգներում:

——◆——

---

# ՍՍՌՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ԴԵՊՈՒՏԱՏՆԵՐԸ

Մարտի 12-ին, ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունների օրը սովետական ժողովուրդը միահամուռ կերպով ընտրեց ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատներ: Բոլոր ընտրական օկրուգներում ընտրված դեպուտատները կոմունիստների և անկուսակցականների բլոկի թեկնածուներ են: ՍՍՌՄ Գերագույն Սովետում ընտրված դեպուտատների ցուցակը հրապարակված է «Սովետական Հայաստան» թերթի մարտի 15-ի և 16-ի համարներում:

Գերագույն Սովետում ընտրված դեպուտատներն են.

*ԻՈՍԻՖ ՎԻՍՍԱՐԻՈՆՈՎԻՉ ՍՏԱԼԻՆԸ— Մոսկվայի Ստալինյան օկրուգ.*

*ՎՅԱՉԵՍԼԱՎ ՄԻԽԱՅԼՈՎԻՉ ՄՈԼՈՏՈՎԸ— Մոսկվայի Մոլոտովյան օկրուգ.*

*ԳԵՈՐԳԻ ՄԱՔՍԻՄԻԼԻԱՆՈՎԻՉ ՄԱԼԵՆԿՈՎԸ —Մոսկվայի Լենինգրադյան օկրուգ.*



*ԼԱՎՐԵՆՏԻ ՊԱՎԼՈՎԻՉ ԲԵՐԻԱՆ—Թբիլիսիի Ստալինյան օկրուգ.*

*ԿԼԻՄԵՆՏ ԵՖՐԵՄՈՎԻՉ ՎՈՐՈՇԻԼՈՎԸ— Մինսկի քաղաքային օկրուգ.*

*ԱՆԱՍՏԱՍ ԻՎԱՆՈՎԻՉ ՄԻԿՈՅԱՆԸ— Երևանի Ստալինյան օկրուգ.*

*ԼԱԶԱՐ ՄՈԻՍԵԵՎԻՉ ԿԱԳԱՆՈՎԻՉԸ—Տաշքենդի Լենինյան օկրուգ.*

*ԱՆԴՐԵՅ ԱՆԴՐԵՅԵՎԻՉ ԱՆԴՐԵԵՎԸ— Աշխաբադի օկրուգ.*

*ՆԻԿԻՏԱ ՍԵՐԳԵԵՎԻՉ ԽՐՈՒՇՉԵՎԸ—Մոսկվայի Կալինինյան օկրուգ.*

*ԱԼԵՔՍԵՅ ՆԻԿՈԼԱԵՎԻՉ ԿՈՍԻԳԻՆԸ— Իվանովոյի օկրուգ.*

*ՆԻԿՈԼԱՅ ԱԼԵՔՍԱՆԴՐՈՎԻՉ ԲՈՒԼԳԱՆԻՆԸ —Մոսկվայի քաղաքային օկրուգ.*

*ՆԻԿՈԼԱՅ ՄԻԽԱՅԼՈՎԻՉ ՇՎԵՐՆԻԿԸ— Սվերդլովսկի օկրուգ.*

*ՄԻԽԱՅԻԼ ԱՆԴՐԵԵՎԻՉ ՍՈՒՍԼՈՎԸ— Սարատովի Լենինյան օկրուգ.*

*ՊԱՆՏԵԼԵՅՄՈՆ ԿՈՆԴՐԱՏԵՎԻՉ ՊՈՆՈՄԱՐԵՆԿՈՆ— Մինսկի գյուղական օկրուգ.*

*ՄԱՏՎԵՅ ՖԵՈԴՈՐՈՎԻՉ ՇԿԻՐՅԱՏՈՎԸ— Տուլա-Ռյազանի օկրուգ.*

*ՍԻՄԵՈՆ ՄԻԽԱՅԼՈՎԻՉ ԲՈՒԴՅՈՆՆԻՆ— Ուկրաինական ՍՍՌ Շեպետովկայի օկրուգ.*

ՆԻԿՈԼԱՅ ԱԼԵՔՍԱՆԴՐՈՎԻՉ ՄԻԽԱՅԼՈՎԸ— Ստավրոպոլի օկրուգ։

Հայկական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկայից ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատներ են ընտրված.

ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ ԳՐԻԳՈՐ ԱՐՏԵՄԻ— Երևանի օկրուգ.

ՊՈՂՈՍՈՎ ՀԱՐՈՒԹՅՈՒՆ ՎԱՐՈՍԻ—Լենինականի օկրուգ.

ՍԱՐՅԱՆ ՄԱՐՏԻՐՈՍ ՍԵՐԳԵՅԻ— Կիրովականի օկրուգ.

ԿԱՐԱՊԵՏՅԱՆ ՍԱՀԱԿ ԿԱՐԱՊԵՏԻ— Նոր Բայազետի օկրուգ.

ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆ ՎԻԿՏՈՐ ՀԱՄԱԶԱՍՊԻ Էջմիածնի օկրուգ.

ՎԱՐԴԱՆՅԱՆ ԵՂԻՇԵ ԳԵՎՈՐԳԻ— Երևանի Մոլոտովյան օկրուգ.

ԴՐԱՄՓՅԱՆ ԿԱՐԻՆԵ ՄԵԼՔՈՆԻ— Երևանի Սպանդարյանի օկրուգ.

ՆԵՐՍԻՍՅԱՆ ՍՏԵՓԱՆ ՍԵՐԳԵՅԻ— Երևանի Կիրովյան օկրուգ.

ԳՐԻԳՈՐՅԱՆ ԲԵՐՍԱԲԵ ԱԼԵՔՍԱՆԴՐԻ—Բերիայի օկրուգ.

ՊԱՊՈՅԱՆ ԻՍԱՀԱԿ ԱԼԵՔՍԱՆԻ—Ալավերդու օկրուգ.



ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ ԱՐԱՄԱՅԻՍ ԲԱԳՐԱՏԻ —Ամասիայի օկրուգ.

ԼԻԽԱՉԵՎԱ ԵՎԴՈԿԻԱ ՎԱՍԻԼԵՎՆԱ— Լենինականի օկրուգ.

ԱԲԱՋՅԱՆ ԳԱՐԵԳԻՆ ՄԻՔԱՅԵԼԻ— Ախուրյանի օկրուգ.

ՌՈՒԽԻԿՅԱՆ ԿՈՐՅՈՒՆ ՀՈՎՀԱՆՆԵՍԻ—Կիրովականի օկրուգ.

ԿՈՐԽՄԱԶՅԱՆ ՍԵՐԳԵՅ ԱՐԿԱԴԻԻ— Դիլիջանի օկրուգ.

ՅՈԼՅԱՆ ՌՈՒԲԵՆ ՀՈՎՍԵՓԻ— Ախտայի օկրուգ.

ԿԱԴԻՄՈՎԱ ՍԵԴԱ ՌԻԶԱԵՎՆԱ— Մարտունու օկրուգ.

ԳՐԻԳՈՐՅԱՆ ՀԱԿՈԲ ՍԻՐԵԿԱՆԻ— Նոր Բայազետի օկրուգ.

ՄԱՐԳԱՐՅԱՆ ՍԻՆՈԴ ՀՈՎՀԱՆՆԵՍԻ— Արտաշատի օկրուգ.

ՓԻՐՈՒԶՅԱՆ ԱՐԱՄ ՍԵՐԳԵՅԻ— Միկոյանի օկրուգ.

ԱԼԵՔՅԱՆ ԳԵՂԱՄ ԲԱԳՐԱՏԻ— Կոտայքի օկրուգ.

ՊԱՊՅԱՆ ՄԱՑԱԿ ՊԵՏՐՈՍԻ— Ստեփանավանի օկրուգ.

ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ ՄԱՐԻԱՄ ՊԵՏՐՈՍԻ—Արթիկի օկրուգ.

ՄԻՔԱՅԵԼՅԱՆ ՍՈՒՐԵՆ ԱՂԱՍԻԻ— Ապարանի օկրուգ.

ԳՈՒԼԱԿՅԱՆ ԱՐՄԵՆ ԿԱՐԱՊԵՏԻ— Իջևանի օկրուգ.

ՂԱՐԻԲՅԱՆ ՌԵԲԵԿԱ ԲԵՆԻԱՄԻՆԻ— Էջմիածնի օկրուգ.

ԱՂԱՋԱՆՅԱՆ ԵՂԻՇԵ ՄԻՆԱՍԻ— Հոկտեմբերյանի օկրուգ.

ՂԱԶԱՐՅԱՆ ԵՆՈՔ ՍԻՄՈՆԻ— Գորիսի օկրուգ.

ԱՆՏՈՆՅԱՆ ԱՐՏԵՄ ԱՂԱԲԵԿԻ— Ղափանի օկրուգ։

— ○ —

---

## ԳԱՐՆԱՆԱՑԱՆԸ ԵՎ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԱՆԵԼԻՔՆԵՐԸ

ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունները հանդիսացան սովետական բազմամիլիոն ժողովրդի բարոյա-քաղաքական միասնության, բոլշևիկյան պարտիայի, հանճարեղ առաջնորդ, հարազատ Ստալինի շուրջը նրա համախմբվածության հզոր ցույցը։ Ինչպես նախորդ ընտրություններում, այնպես էլ այս անգամ կոմունիստների և անպարտիականների ստալինյան բլոկը փայլուն հաղթանակ տարավ։

Մեր երկրի բանվորները, կոլխոզնիկները, ինտելիգենցիան ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունները նշանավորեցին քաղաքական և արտադրական ակտիվության նոր վերելքով, հետպատերազմյան ստալինյան հնգամյա պլանը ժամկետից շուտ կատարելու ասպարեզում ձեռք բերած նորանոր հաջողություններով։

Ընտրական կամպանիայի ամբողջ ընթացքում միլիոնավոր ագիտատորներ աշխատավորներին պատմում էին բոլշևիկյան

պարտիայի և սովետական կառավարության ներքին և արտաքին քաղաքականության հարցերի մասին. պարզաբանում ՍՍՌՄ Ստալինյան Կոնստիտուցիայի հիմունքները, կապիտալիստական հասարակարգի նկատմամբ սոցիալիստական հասարակարգի ունեցած առավելություններն ու կենսունակությունը։ Ընտրական կամպանիայի ընթացքում ագիտկոլեկտիվները աշխատավորների մեջ կատարվող ագիտացիոն-մասսայական աշխատանքի լուրջ փորձ կուտակեցին, այդ աշխատանքի մեջ որպես ագիտատորներ ներգրավվեցին քաղաքականապես պատրաստված, աշխատավորների շրջանում հեղինակություն վայելող մեծ թվով մարդիկ։

Այժմ խնդիրը կայանում է նրանում, որպեսզի ագիտկոլեկտիվները ամրապնդեն քաղաքական ագիտացիայի բնագավառում ձեռք բերած հարուստ փորձը, չթուլացնեն, այլ նոր, ավելի բարձր աստիճանի հասցնեն աշխատավորների շրջանում կատարվող ագիտացիոն-մասսայական աշխատանքը, նրանց ուժերը մոբիլիզացնեն արդյունաբերության, գյուղատնտեսության, կուլտուրայի բնագավառում մեր երկրի առաջ կանգնած խնդիրների լուծման համար։ Ագիտկո-



լեկտիվների, բոլոր ագիտատորների առաջնահերթ խնդիրն է՝ գործարաններում, հիմնարկ-ձեռնարկություններում, նորակառույցներում, կոլխոզներում, սովխոզներում ու մեքենատրակտորային կայաններում ավելի լայնորեն ծավալել սոցիալիստական մրցությունը, որը հանդիսանում է մեր առաջընթացի հզոր գործոնը։ Ոգեշնչված ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրություններում ձեռք բերած փայլուն հաղթանակով և ամփոփելով ի պատիվ այդ ընտրությունների ծավալված սոցիալիստական մրցության արդյունքները, մեր աշխատավորները նորանոր, ավելի բարձր պարտավորություններ են ստանձնում 1950 թվականի պետական պլանը ժամկետից շուտ և որակական բարձր ցուցանիշներով կատարելու համար։

Բոլշևիկյան պարտիան և Սովետական կառավարությունը ընթացիկ տարում նորանոր խնդիրներ են դրել կոլխոզային գյուղի աշխատավորների առաջ՝ սոցիալիստական գյուղատնտեսության նոր հզոր վերելքն ապահովելու ասպարեզում։ 1950 թվականին ավելի բարձր բերք աճեցնելու, անասնաբուծության մթերատվությունը բարձրացնելու ուղիները պարզորոշ կերպով շարադրված են ՍՍՌՄ Մինիստրների Սովետի և ՀամԿ(բ)Պ

Կենտկոմի վերջերս հրապարակված «Կոլտնտեսությունները, ՄՏ կայանները և սովխոզները գարնանացանին նախապատրաստելու ընթացքի մասին» և «ՍՍՌՄ Մինիստրների Սովետի և ՀամԿ(բ)Պ Կենտկոմի 1949 թվականի ապրիլի 18-ի «Կոլխոզային ու սովխոզային հանրային մթերատու անասնաբուծության զարգացման եռամյա պլանը (1949—1951 թ. թ.)» որոշման կատարման ընթացքի մասին» ծրագրային որոշումներում։

Կոլխոզային գյուղացիությունը մեծագույն խանդավառությամբ ընդունեց հարազատ պարտիայի և կառավարության նոր միջոցառումներն ու դիրեկտիվները։ Ամենուրեք կոլխոզնիկներն ու կոլխոզնիկուհիները, կոլխոզային գյուղի մեխանիզատորները նորանոր պարտավորություններ ենստանձնում ստալինյան նոր հնգամյակի եզրափակիչ տարվա գարնանացանը սեղմ ժամկետներում և ագրոտեխնիկական բարձր ցուցանիշներով կատարելու, անասնաբուծության նոր վերելքի հասնելու համար։

Ագիտկոլեկտիվների և ագիտատորների խնդիրն է՝ բոլշևիկյան պարտիայի և Սովետական կառավարության որոշումները հասցնել գյուղատնտեսության ֆրոնտի աշխատողներին, կոլխոզների, ՄՏ կայանների



և սովխոզների աշխատողների գիտակցությանը և նրանց բոլոր ուժերը մոբիլիզացնել առաջադրված խնդիրները կատարելու համար։

Ռեսպուբլիկայի գյուղատնտեսության զարգացման համար չափազանց վճռական նշանակություն ունեն Հայաստանի Կ(բ)Պ Կենտկոմի 5-րդ պլենումի որոշումները, որոնց մասսայականացմանը և կենսագործմանը պետք է նվիրաբերեն իրենց ուժերը բոլոր ագիտատորները։

Ռեսպուբլիկայում արդեն սկսվել են գարնան-գյուղատնտեսական աշխատանքները։ Ինչպես գարնանացանի նախապատրաստման, այնպես և նրա հաջող անցկացման ասպարեզում մեծ անելիքներ ունեն գյուղական ագիտատորները։ Կոլխոզային գյուղի յուրաքանչյուր ագիտատորի առաջնահերթ խնդիրն է՝ հետաքրքրվել, թե որքանով է իրեն ամրացված բրիգադան, օղակը պատրաստ գարնանացանին, օգնել կոլխոզնիկներին լրացնելու սերմացուի, գյուղգործիքների պակասը, ապահովել պարարտանյութի դաշտ փոխադրման պլանը։ Քաղաքական-մասսայական աշխատանքների կենտրոնը ներկայումս պետք է փոխադրել դաշտ, որտեղ վճռվում է բարձր բերքատվության

հարցը։ Ագիտատորները պետք է հետևեն գյուղատնտեսական աշխատանքների որակին։ Բանավոր, ցուցադրական և ագիտացիայի այլ ձևերի գործադրմամբ ագիտատորները պարտավոր են լայնորեն մասսայականացնել գյուղատնտեսության առաջավորների փորձը, այն արմատավորել իրենց ամրացված բրիգադայում, օղակում, հասնելով այն բանին, որ յուրաքանչյուր կոլխոզնիկ, օղակ, բրիգադա կատարի սոցիալիստական մրցության վերցրած պարտավորությունները։

Ագիտատորների խնդիրն է՝ ուժեղացնել մասսայական-քաղաքական աշխատանքը կոլխոզնիկների, ՄՏ կայանների ու սովխոզների աշխատողների մեջ, գլխավորել աշխատանքային ու քաղաքական խանդավառությունը գյուղում, այն լիովին ի սպաս դնելով գարնանացանի հաջող նախապատրաստության ու անցկացման և 1950 թվականին գյուղատնտեսական բոլոր կուլտուրաների բարձր բերք ստանալուն։

—O—

## ԱԳԻՏԱՑԻՈՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՓՈՐՁԻՑ

# ԱԳԻՏԿՈԼԵԿՏԻՎԸ ՊԱՅՔԱՐՈՒՄ Է ԲԱՐՁՐ ԲԵՐՔԻ ՀԱՄԱՐ

Արտաշատի շրջանի Անաստասավան գյուղի «Փարիզյան կոմունա» կոլխոզը 1949 թվին մեծ հաջողությունների հասավ բամբակի բերքատվության բարձրացման ասպարեզում։ Կոլխոզը որոշել է այս տարի ավելի բարձրացնել ինչպես բամբակի դաշտերի, այնպես և խաղողի այգիների ու բանջարանոցների բերքատվությունը։

Ստորև տպագրում ենք «Փարիզյան կոմունա» կոլխոզի ագիտկոլեկտիվի ղեկավար ընկ. Հ. Մանուկյանի զրույցն այն մասին, թե ինչպես են կոլխոզի ագիտատորներն օգնում կոլխոզնիկներին գարնանացանը պատրաստ դիմավորելու, այն հաջող անցկացնելու համար նրանց վերցրած պարտավորությունները կատարելու գործում։

***

*1949 թվին մեր կոլխոզն ստացավ բամբակի աննախընթաց բարձր բերք՝ իր դաշտերի յուրաքանչյուր հեկտարից պետությանը հանձնելով 41 ցենտներ բամբակի հումք։*

Բարձր բերքի շնորհիվ մեծ չափերով աճեցին ինչպես ամբողջ կոլխոզի, այնպես էլ կոլխոզնիկների եկամուտները։ Անցյալ տարի կոլխոզի եկամուտները կազմեցին յոթ միլիոն 105 հազար ռուբլի։ Մեր Կոլխոզն այդ նվաճումներին հասավ արտադրության լավ կազմակերպման, կոլխոզնիկների նվիրված աշխատանքի շնորհիվ։ Բայց կոլխոզնիկները չհանգստացան իրենց ձեռք բերած նվաճումներով և որոշեցին 1950 թվականին ստանալ բամբակի, խաղողի և բանջարանոցային կուլտուրաների ավելի բարձր բերք և իրենց այդ որոշման կենսագործմանը ձեռնամուխ եղան անցյալ տարվա բերքահավաքից անմիջապես հետո։ Դեռ հունվար ամսին կոլխոզի ընդհանուր ժողովում քննության առնվեց 1950 թվի գարնանացանի նախապատրաստության հարցը։ Ժողովը կոնկրետ միջոցառումներ նշեց բանջարանոցային կուլտուրաների սերմացուի լրացման, գյուղատնտեսական գործիքների վերանորոգման, տեղական պարարտանյութերը դաշտ փոխադրելու, ինչպես նաև հանքային պարարտանյութերի հայթայթման և այլ հարցերի վերաբերյալ։

Կոլխոզի պարտիական կազմակերպությունը ագիտկոլեկտիվին առաջադրանք տվեց՝ ագիտացիոն-մասսայական լայն աշ-



խատանք ծավալել բրիգադաներում գարնանացանի նախապատրաստման հարցերի վերաբերյալ, օգնել կոլխոզնիկներին նրանց վերցրած պարտավորությունները կատարելու գործում։ Ագիտկոլեկտիվն իր ժողովում քննության առավ գարնանացանի նախապատրաստության ասպարեզում ագիտատորների անելիքների հարցը։ Յուրաքանչյուր ագիտատորի առաջադրանք տրվեց՝ իրեն ամրացված բրիգադայի բրիգադիրի հետ միասին ստուգել և պարզել, թե բրիգադան ինչի պակաս է զգում, այդ մասին հայտնել կոլխոզվարչությանը և հետևել, որպեսզի եղած պակասը շտապ կերպով լրացվի։ Ագիտատորներին հանձնարարվեց նաև օգնել բրիգադաներին և օղակներին՝ սոցիալիստական մրցության պայմանագրեր կնքելու գարնանացանի նախապատրաստությունը ժամկետին և բարձր ցուցանիշներով ավարտելու համար։

Եվ ահա այժմ, երբ մեր կոլխոզը կազմ ու պատրաստ սկսեց գարնան գյուղատնտեսական աշխատանքները, երբ այդ աշխատանքների առաջին օրերի արդյունքները արդեն ակնառու են, կարելի է ասել, որ ագիտկոլեկտիվը հաջող կերպով կատարեց գարնանացանի նախապատրաստության հարցում



պարտկազմակերպության առաջադրած խընդիրը։

Ագիտատորների աշխատանքից վերցրած մի քանի օրինակներով կարելի է ցույց տալ, թե նրանք ինչպիսի կոնկրետ օգնություն էին ցույց տալիս կոլխոզնիկներին գարնանացանի նախապատրաստության գործում։ Նախ պետք է ասել, որ ագիտատորները գարնանացանի նախապատրաստման գործում իրենց ձեռք բերած հաջողություններին հասան այն բանի շնորհիվ, որ կարողացան ճիշտ կերպով գլխավորել աշխատանքային այն բուռն խանդավառությունը, որն ապրում էին կոլխոզնիկները, նախապատրաստվելով ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրություններին, այդ խանդավառությունն ուղղելով դեպի արտադրական առաջադրանքների կատարումը։

Վերցնենք արհեստանոցների ագիտատոր ընկ. Զ. Զաքարյանի աշխատանքի փորձը։ Ագիտատոր Զաքարյանի առաջարկությամբ դարբնոցի և հյուսնոցի աշխատողները պարտավորություն վերցրեցին՝ բոլոր գյուղգործիքների և սայլերի վերանորոգումը ավարտել, ինչպես և եղած պակասը լրացնել մինչև մարտի 1-ը։ Ինչպես ագիտացիայի ժամերին, այնպես և առանձին աշխատողների



հետ զրուցելիս Զաքարյանը մշտապես առաջ էր քաշում վերցրած պարտավորությունների կատարման հարցը, տեղեկացնում, թե արդեն ինչ է կատարված և դեռևս ինչ է մընում կատարելու, պատմում էր արհեստանոցների լավագույն աշխատողների աշխատանքի փորձի մասին, օգնում հետ մնացողներին՝ հասնելու առաջավորներին։ Ագիտատոր Զաքարյանը կոլխոզվարչությանը տեղյակ պահեց, որ մետաղի եղած պաշարը չի բավարարի բահեր և պահեստի զանազան մասեր պատրաստելու համար և այդ պակասը լրացվեց ժամանակին։

Եվ ահա ագիտատոր Զաքարյանի կատարած ամենօրյա ագիտացիոն-մասսայական աշխատանքն օգնեց արհեստանոցի աշխատողներին վերցրած պարտավորությունները կատարել ժամկետից շուտ և բարձր որակով։

Կամ թե վերցնենք աշխատանքի մի ուրիշ բնագավառ— տեղական պարարտանյութերի դաշտ փոխադրելը։ Այս տարի մեր կոլխոզին տրված էր դաշտ փոխադրել երեք հազար 200 տոննա տեղական պարարտանյութ։ Մինչև գարնան գյուղատնտեսական աշխատանքներն սկսելը դաշտ փոխադրվեց 3 հազար 700 տոննա։ Պարարտանյութի փոխադրումը շարունակվում է։

Պարարտանյութերի փոխադրման ասպարեզում նույնպես կոլտնտեսականներին զգալի օգնություն ցույց տվեցին ագիտատորները։ Նրանք հետևում էին, որպեսզի բրիգադները պարարտանյութը դաշտ փոխադրեն ոչ թե առիթից առիթ, այլ պլանավորված, սիստեմատիկ կերպով, եթե որևէ բրիգադ թերանում էր, ապա նրա ագիտատորը ժամանակին ահազանգում էր այդ մասին, իր զրույցի նյութը դարձնում այդ հարցը։

Այսպես օրինակ, 3-րդ բրիգադան պարարտանյութերի փոխադրման գործում որոշ ժամանակ թուլացրեց իր աշխատանքները և հետ մնաց մյուս բրիգադաներից։ Բրիգադայի ագիտատոր ընկ. Ն. Հակոբյանը այդ մասին խոսեց իր զրույցի ժամանակ, կոնկրետ թվերով ցույց տվեց մյուս բրիգադաների լավ աշխատանքը, նախազգուշացրեց, որ եթե այդպես շարունակվի, ապա իրենց բրիգադան չի կատարի սոցիալիստական մրցության պայմանագրով վերցրած պարտավորությունները։ Ագիտատորի այդ զրույցից հետո 3-րդ բրիգադան եռանդուն կերպով ձեռնամուխ եղավ պարարտանյութը դաշտ փոխադրելու գործին և շուտով հասավ մյուս բրիգադաներին։

Կարելի է նշել նաև 5-րդ բրիգադայի ագի-



տատոր ընկ. Ա. Մուրադյանի լավ աշխատանքը։ Նրա առաջարկով իրենց բրիգադան, պարարտանյութը դաշտ փոխադրելուց հետո, մինչև այն ցրելը, սկսեց կիտել առանձին փոսերի մեջ, որպեսզի ավելի լավ փթի։ Ագիտատոր Մուրադյանի այդ առաջարկությունը սկսեցին կիրառել նաև կոլխոզի մյուս բրիգադաները։

Մեր կոլխոզը ժամանակին կազմեց 1950 թվի արտադրական ֆինանսական պլանները։ Ագիտկոլեկտիվը ագիտատորների առաջ խնդիր դրեց՝ յուրաքանչյուր կոլխոզնիկի սեփականությունը դարձնել այդ պլանները։ Կարելի է առանց չափազանցնելու ասել, որ այսօր կոլխոզում չկա մի կոլխոզնիկ, որը չգիտենա, թե այս գյուղատնտեսական տարում ինչ առաջադրանքներ են տրված իր օղակին, բրիգադային, ամբողջ կոլխոզին։ Եվ այս շնորհիվ ագիտատորների ամենօրյա ագիտացիոն-բացատրական աշխատանքի։

Ծանոթանալով իրենց արտադրական առաջադրանքների հետ և քննության առնելով դրանք, օղակները, բրիգադաները նոր, ավելի բարձր պարտավորություններ վերցրին և ագիտատորների օգնությամբ սոցիալիստական մրցության պայմանագրեր կնքեցին գարնանացանը սեղմ ժամկետներում և բարձր

*ագրոտեխնիկայի կանոններով կատարելու համար, այս տարի ավելի բարձր բերք ստանալու համար։*

*Երևանի Ստալինյան օկրուգի ընտրողների մարտի 10-ի նախընտրական ժողովում արտասանած ճառում ընկեր Միկոյանը խոսեց բերքատվության բարձրացման ասպարեզում մեր կոլխոզի ձեռք բերած նվաճումների մասին, նշելով որ այդ հաջողությունները աշխատանքի լավ կազմակերպման ու ղեկավարման արդյունք են։ Ընկեր Միկոյանի ճառը ագիտատորները լայնորեն մասսայականացրին ամբողջ կոլխոզում։ Այդ ճառը աշխատանքային նոր, անհուն խանդավառություն առաջացրեց կոլխոզնիկների մեջ։ Օղակներում ու բրիգադներում ուսումնասիրելով այդ ճառը, կոլխոզնիկները միահամուռ կերպով որոշում էին՝ ի պատասխան ընկեր Միկոյանի գովասանքի աշխատել է՛լ ավելի լավ և 1950 թվին հասնել ավելի բարձր բերքատվության։*

*Գարնան գյուղատնտեսական աշխատանքներն սկսելուց առաջ կոլխոզի պարտիական կազմակերպությունը ավելացրեց ագիտատորների թիվը այն հասցնելով 34-ի և ագիտկոլեկտիվի ուժերի նոր վերադասավորում կատարեց, ելնելով այն բանից, որ յուրա-*



*քանչյուր օղակ ունենա իր ագիտատորը և որ ինչպես գարնանացանի, այնպես և հետագա գյուղատնտեսական աշխատանքների ընթացքում ագիտացիոն-մասսայական ամբողջ աշխատանքը տեղափոխվի դաշտ։*

*Մեր կոլխոզը իր գարնանացանի մասսայական աշխատանքներն սկսեց այգեբացով։ Հենց առաջին օրը ցույց տվեց, թե աշխատանքային ինչպիսի խանդավառություն է տիրում կոլխոզնիկների մեջ, թե իրենց վերցրած պարտավորությունները կատարելու ինչպիսի վճռականությամբ են լցված նրանք։ Բավական է ասել, որ կոլխոզի ունեցած 354 հեկտար խաղողի այգիների այգեբացը կատարվեց 3 աշխատանքային օրում։*

*Մենք դեռ նոր էինք ավարտել այգեբացը, որ հրապարակվեց ՍՍՌՄ Մինիստրների Սովետի և ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեի որոշումը կոլխոզները, ՄՏ կայանները և սովխոզները գարնանացանին նախապատրաստվելու ընթացքի մասին։ Այդ որոշումը մենք ուսումնասիրեցինք ագիտկոլեկտիվում, ուր ագիտատորներին ցուցումներ տրվեց՝ այն լայնորեն մասսայականացնել բոլոր բրիգադներում ու օղակներում և որպես աշխատանքի ծրագիր ամբողջ գարնանացանի ընթացքում հետևել նրա անշեղ կենսագործմա-*

նը։ ՍՍՌՄ Մինիստրների Սովետի և Համ. Կ(բ)Պ Կենտկոմի որոշումը աշխատանքային նոր խանդավառություն առաջ բերեց կոլխոզնիկների մեջ։ Ուսումնասիրելով այն, բոլոր բրիգադաներն էլ իրենց սոցիալիստական մրցության պայմանագրերում նորանոր, ավելի բարձր պարտավորություններ վերցրին գարնանացանը ավելի սեղմ ժամկետներում և բարձր որակով կատարելու համար։

Կոլխոզնիկներն իրենց տված խոստումը գործով ապացուցելու հիանալի օրինակներ են տալիս այգեէտի ժամանակ։ Եթե անցյալ տարիներին մեր կոլխոզն օրական կատարում էր 15—20 հեկտար էտ, ապա այս տարի յուրաքանչյուր օր կոլխոզնիկներն էտում են 25—30 հեկտար այգի։

Ինչպես գարնանացանի մյուս աշխատանքներում, այգեէտի ընթացքում նույնպես մեր ագիտատորները ամենօրյա օգնություն են ցույց տալիս կոլխոզնիկներին բարձր որակով էտելու, վերցրած պարտավորությունները կատարելու համար։ Այս բանը կարելի է ցույց տալ էտն սկսվելու հենց առաջին օրերին ագիտատորների կատարած աշխատանքից վերցրած օրինակներով։ Հինգերորդ բրիգադայի 2-րդ օղակը, օրինակ, այգեէտի առաջին օրը էտը կատարեց ցածր որակով։ Ա-



գիտատոր ընկ. Ա. Մուրադյանը երեկոյան այդ հարցը քննության դրեց բրիգադայի արտադրական խորհրդակցությունում։ Բրիգադայի որոշմամբ 2-րդ օղակը հաջորդ օրը այդ տարածության վրա կրկնակի էտ կատարեց և վերացրեց նախորդ օրվա թերությունը։

Այգեէտի առաջին օրը 8-րդ բրիգադայում իրենց առաջադրանքները չկատարեցին կոլխոզնիկներ Ս. Սայադյանը և Կ. Դանիելյանը։ Ագիտատոր Ս. Մինասյանը նրանց անբավարար աշխատանքի մասին խոսեց իր զրույցի ժամանակ։ Սայադյանը և Դանիելյանը խոսք տվեցին հետ չմնալ ընկերներից և իրոք, հաջորդ օրվանից սկսեցին կատարել ու գերակատարել իրենց առաջադրանքները։

Գովասանքի արժանի նախաձեռնություն հանդես բերեց 10-րդ բրիգադայի ագիտատոր ընկ. Կ. Խաչատրյանը։ Նա առաջարկեց այգեէտին զուգընթաց կատարել «բուկբաց» իրենց այգու այն կտորներում, ուր վազերը թույլ են և ուժեղ սնունդ են պահանջում։ Ագիտատորը հայտնեց նաև, որ իր հաշվումներով իրենց բրիգադան ունի այդպիսի 8 հեկտար տարածություն։ Բրիգադան միաձայն ընդունեց ագիտատոր Խաչատրյանի առաջարկությունը և կարճ ժամկետում կատարեց այդ 8 հեկտարի վազերի «բուկբացը»։

10-րդ բրիգադայի օրինակով իրենց բոլոր նվազ վազերի բուկբաց կատարեցին նաև կոլխոզի մյուս բրիգադաները։

Ապրիլ ամսվա կեսերից մեր կոլխոզը կըսկսի բամբակի ցանքը։ Բամբակի բարձր բերք ստանալու համար ինչպես ցանքի ժամանակ, այնպես և բամբակենու մշակման և բերքահավաքի ամբողջ ընթացքում խոշոր դեր ունի կատարելու կոլխոզնիկների մեջ տարվող ագիտացիոն-մասսայական աշխատանքը։ Մեր ագիտատորները արդեն յուրաքանչյուր կոլխոզնիկի են հասցրել կոլխոզին տրված պետական առաջադրանքները, կոլխոզի վերցրած պարտավորությունները, բրիգադայի, օղակի պլանները։ Ագիտատորների օգնությամբ բրիգադաները, օղակները, անհատ կոլխոզնիկները կնքել են սոցիալիստական մրցության պայմանագրեր ու նշել են իրենց վերցրած պարտավորությունները։

Անցյալ տարիներին մեր ագիտկոլեկտիվի աշխատանքների թերի կողմն է հանդիսացել ցուցադրական ագիտացիայի վատ դրվածքը բամբակի դաշտերում աշխատողների մեջ։ Այս տարի մենք ձգտում ենք հնարավորին չափ լայնորեն օգտագործել ագիտացիայի այդ ձևը։ Ագիտկոլեկտիվի որոշմամբ բոլոր բրիգադաներում սիստեմատիկ կերպով լույս



են տեսնելու խլյիշովկաներ, որոնց համար պատրաստել ենք հարմար տախտակներ և որոնք դրվելու են դաշտում, այնտեղ ուր աշխատելու է բրիգադան։ Այդ տախտակների վերևում գրված է լինելու բամբակի բերքատվության՝ բրիգադայի պլանը, իսկ բերքահավաքի ժամանակ գրվելու է նաև հումքի հանձնման պլանի կատարողականը։

Մենք պատրաստել ենք նաև ցուցանիշների հատուկ տախտակներ բամբակացան առանձին օղակների և ամեն մի կոլխոզնիկի համար։ Կոլխոզնիկի աշխատանքի ցուցանիշների տախտակը դրվելու է նրան ամրացված հողակտորի վրա։ Այդ տախտակի վրա նշվելու է այն բոլոր ագրոմիջոցների կիրառումը, որը պետք է կատարի նա։ Իսկ օղակի ցուցանիշների տախտակի վրա նշվելու են օղակի արդեն կատարած ագրոտեխնիկական միջոցառումները։ Այդ ստուգումները և նշումները կատարելու են ագիտատորները՝ օղակավարների և բրիգադիրների հետ միասին։

—○—

# ԱԳԻՏԱՑԻԱՆ Ի ՍՊԱՍ ԵՆՔ ԴՆՈՒՄ ՊԼԱՆՆԵՐԻ ԿԱՏԱՐՄԱՆ ԳՈՐԾԻՆ

Երևանի Ավտոդողերի գործարանը արտադրողականության բարձրացման ասպարեզում 1949 թվին մեծ հաջողությունների հասավ․ գործարանը անցյալ տարի 76 տոկոսով ավելի արտադրանք տվեց, քան նախորդ 1948 թվին։ Այս տարի, ըստ պետական պլանի, գործարանի արտադրության աճը, 1949 թվի համեմատությամբ, կազմելու է 41 տոկոս։ Գործարանի կոլեկտիվը, հաշվի առնելով իր ուժերը և եղած հնարավորությունները, պարտավորություն է վերցրել տարեկան պլանը կատարել Հայաստանում սովետական կարգերի հաստատման 30-րդ տարեդարձի օրը՝ նոյեմբերի 29-ին։

Իսկ ինչպե՞ս են մեր գործարանի ագիտկոլեկտիվը, նրա ագիտատորները պայքարում այդ պարտավորությունները կատարելու համար, ինչպե՞ս են նրանք օգնում բանվորներին՝ բարձրացնելու աշխատանքի արտադրո-



ղականությունը, լավացնելու արտադրանքի որակը, խնայողաբար ծախսելու հումքը։ Որպեսզի ագիտկոլեկտիվը կարողանա կատարել իր առջև դրված խնդիրները, գործարանի պարտկազմակերպությունը ագիտատորներ առաջադրելիս հաշվի է առել ոչ միայն նրանց քաղաքական պատրաստականության մակարդակը, այլև ի նկատի է ունեցել այն հանգամանքը, որ յուրաքանչյուր ագիտատոր իր աշխատանքի բնույթով կապված լինի այն աշխատամասի, բրիգադայի հետ, ուր նա պետք է ագիտացիոն-մասսայական աշխատանք տանի, ծանոթ լինի այդ տեղամասի արտադրությանը։ Այդ կհեշտացնի ագիտատորի աշխատանքը և կբարձրացնի նրա հեղինակությունը ունկնդիրների մոտ։ Եվ ահա գործարանի բոլոր տեղամասերն այդ սկզբունքով ընտրված ագիտատորներով ապահովելով, պարտիական կազմակերպությունը հասավ այն բանին, որ բանվորների ու ծառայողների մեջ ծավալված ամբողջ ագիտացիոն-մասսայական աշխատանքը, որը տարվում է բազմազան ձևերով, ի սպաս է դրված ստալինյան նոր հնգամյա պլանը ժամկետից շուտ կատարելու գործին։

Բերենք մի քանի օրինակներ։

Վուլկանիզատորների բրիգադան, որի ագրեգատից դուրս են գալիս արդեն պատրաստի ավտոդողերը, մի ժամանակ սկսեց նկատելի կերպով թերակատարել իր առաջադրանքները։ Բանվորներն աշխատում էին նույն եռանդով, բայց վերջին հաշվով ստացվում էր, որ արտադրանքի մեկ միավորի վրա ավելի շատ ժամանակ է ծախսվում, քան տրված նորմայով։

Բայց ահա մեկ անգամ, երբ այդ բաժանմունքի ագիտատոր ընկ. Գ. Խաչատրյանը, ժամացույցը ձեռքին, ուշի-ուշով հետևում էր բրիգադայի աշխատանքին, պարզելու համար, թե վերջապես որտե՞ղ է թաքնված արտադրողականության իջեցման պատճառը, լսեց բանվորներից մեկի խոսքերն այն մասին, թե «Եղբայր չի սահում էլի՛, սրանից ուժեղ էլ ինչպե՞ս կարելի է հրել»։ Ագիտատոր Խաչատրյանը իսկույն մոտեցավ այդ բանվորի աշխատատեղին և ուշադրությամբ ուսումնասիրելով տեսավ, որ տրանսպորտյորի գլանները, որոնց վրայից սահում են ավտոդողերի կաղապարները, շատ դժվարությամբ են պտտվում։ Ագիտատորը դիմեց գլխավոր մեխանիկին և ստուգումից պարզվեց, որ



տրանսպորտյորը պետք է հիմնական վերանորոգման և ձևափոխման ենթարկվի։ Նրա անկանոն լինելու պատճառով բանվորները իզուր տեղը շատ էներգիա էին ծախսում և ժամանակ կորցնում։ Եվ իրոք, վերանորոգումը և ձևափոխումը կատարելուց հետո վուլկանիզատորների բրիգադան սկսեց սիստեմատիկաբար գերակատարել պլանները։

Վերցնենք մեկ ուրիշ օրինակ։ Ներքնադողերի (կամերա) մեքենայի վրա աշխատող բրիգադան, որի բրիգադիրն է երիտասարդ բանվոր Վ. Մանուկյանը, երկար ժամանակ չէր կատարում իր պլանները։ Բոլորս էլ տեսնում էինք, որ դրա պատճառը բրիգադայում տիրող աշխատանքային ցածր կարգապահությունն էր, որը հետևանք էր իր՝ բրիգադիրի կողմից դեպի աշխատանքն ունեցած ոչ լուրջ վերաբերմունքի, բրիգադայի անդամների նկատմամբ ոչ պահանջկոտ լինելու։ Բրիգադիր Մանուկյանին արված նախազգուշացումները, հանդիմանությունները չէին օգնում գործին։ Ագիտատոր Օ. Կալաշյանը այլ մոտեցում ունեցավ բրիգադիր Մանուկյանի նկատմամբ։ Մեկ անգամ, երբ հաջորդ բաժնի բանվորները ներքնադողեր չունենա-

լու պատճառով պարապուրդ էին տալիս, ագիտատոր Կալաշյանը բրիգադիր Մանուկյանին տարավ նրանց մոտ և ասաց.

— Այ տեսնո՞ւմ ես, մարդիկ պարապ կանգնել են, որովհետև, ձեր մեքենան ներքնադողեր չի հասցնում։ Գիտես ինչ, ինձ թվում է, որ ձեր մեքենայի գլխիկը շատ շուտ-շուտ է կեղտոտվում, դուք այն մաքրում եք ամեն երկու ժամը մեկ անգամ։ Ապա մի մտածիր, չե՞ս կարող այնպես անել, որ որքան կարելի է քիչ ժամանակ կորցնեք նրա մաքրման վրա։

Ագիտատորի առաջարկությունը ոգեշնչեց Մանուկյանին, նա սկսեց մտածել այդ ուղղությամբ և շատ չանցած այնպիսի ձևափոխում կատարեց մեքենայի այդ մասում, որ աշխատանքային ամբողջ ութ ժամվա ընթացքում այլևս հարկ չէր լինում այն մաքրել։ Մաքրում էին միայն աշխատանքի վերջում։ Ագիտատոր Կալաշյանը նորից խոսեց բրիգադիր Մանուկյանի հետ.

— Հիանալի գործ կատարեցիր։ Այժմ հարկավոր է հետևել, որ բրիգադայիդ անդամները հոգատար խնամեն մեքենան, չփչացնեն այս լավ գործը։



Մանուկյանի բրիգադան հիմնովին վերակառուցեց իր աշխատանքը, սկսեց ոչ միայն կատարել, այլև գերակատարել իր պլանները։ Գործարանում իսպառ վերացան ներքնադողերի պակասի հետևանքով առաջացող պարապուրդները։ Բրիգադիր Մանուկյանն արժանացավ գովասանքի և ստացավ դրամական պարգև։

Մեր գործարանում լայնորեն կիրառվում է ոչ միայն տեղի, այլև Միության մյուս ավտոդողերի գործարանների առաջավոր բանվորների աշխատանքի փորձի մասսայականացման պրակտիկան։ Այդ աշխատանքը ամբողջովին կատարում են գործարանի ագիտատորները։

Այսպես օրինակ, մինչև վերջին ժամանակներս արտադրանքի որակի հարցում մեր գործարանում ամենանեղ տեղերից մեկն այն էր, որ ավտոդողերի մեջ առաջանում էին բշտիկներ։ Մենք ստանում ենք Մոսկվայի Ավտոդողերի գործարանի բազմատիրաժ թերթը և ագիտատորները հաճախ են այնտեղ տպագրված հոդվածներն օգտագործում իրենց զրույցների ժամանակ։ Այդ թերթերից մեկում տպագրված էր Մոսկվայի Ավտոդողերի գործարանի առաջավոր ստախանովական Լ. Իս-

տոմինի հոդվածը, որտեղ հեղինակը պատմում էր այն մասին, թե ինչպես է նա հասել այն բանին, որ խոպան վերացրել է ավտոդողերում առաջացող բշտիկները։

Մեր գործարանի ավտոդողերի հավաքման ցեխի ագիտատոր ընկ. Վ. Մկրտչյանը, որը հերթափոխի պետն է, այդ հոդվածի հետ ծանոթացրեց լավագույն հավաքողներ Ժ. Կարապետյանին և Ա. Եղիազարյանին։ Ագիտատորի օգնությամբ Կարապետյանն ու Եղիազարյանը իրենց մոտ փորձեցին Լ. Իստոմինի աշխատանքի մեթոդը և հիանալի արդյունքների հասան։ Շուտով այդ մեթոդով աշխատել սկսեցին նաև ցեխի մյուս փաթաթողները։ «Բշտիկներ» կոչվող խոտանը ամբողջովին վերացվեց։

Բայց ագիտատոր Մկրտչյանը դրանով չբավարարվեց. նա, հավաքողներ Կարապետյանը և Եղիազարյանը նամակ գրեցին Մոսկվա, ստախանովական Լ. Իստոմինին, հայտնեցին իրենց հաջողությունների մասին և նոր խորհուրդներ հարցրին։ Անվանի ստախանովականից շուտով ստացվեց պատասխանը։ Իր նամակի մեջ Իստոմինը նորից մանրամասն պատմում էր իր աշխատանքի մեթոդի մասին և նոր խորհուրդներ տալիս։



Ագիտացիայի բազմազան ձևերի մեջ մենք առանձին մեծ նշանակություն ենք տալիս ցուցադրական ագիտացիային։ Պատվոտախտակների, արտադրական ցուցանիշների տախտակների, ցեխային, բրիգադային փոխանցիկ դրոշակների, պատի թերթերի ու «կայծակ» թերթերի և ցուցադրական ագիտացիայի այլ ձևերի կիրառման շնորհիվ մեր ագիտկոլեկտիվը հասել է այն բանին, որ գործարանում յուրաքանչյուր բանվոր ու բանվորուհի ամեն օր տեղյակ է լինում ամբողջ գործարանի, իր ցեխի, բրիգադայի արտադրական կյանքին, հետևում է իր պլանների կատարման ընթացքին։

Խ. ԴՐԱՄՓՅԱՆ

Երևանի Ավտոդողերի գործարանի պարտբյուրոյի քարտուղար



# ԲԱՐՁՐ ԲԵՐՔԻ ՀԱՄԱՐ ՄՂՎՈՂ ՊԱՅՔԱՐԻ ԲՈԼՇԵՎԻԿՅԱՆ ԾՐԱԳԻՐԸ

ՍՍՌ Միության Մինիստրների Սովետի և ՀամԿ(բ)Պ Կենտկոմի օրերս ընդունած որոշումը՝ «Կոլխոզները, ՄՏԿ-ները և սովխոզները գարնանացանին նախապատրաստելու ընթացքի մասին», ինչպես նաև ՀԿ(բ)Պ Կենտկոմի հինգերորդ պլենումի որոշումները՝ «1950 թվականի գարնանային գյուղատնտեսական աշխատանքներին նախապատրաստվելու մասին» և «Կոլխոզներում ու սովխոզներում խաղողի ու պտղատու այգիների բերքատվությունը բարձրացնելու միջոցառումների մասին» գյուղատնտեսության հետագա վերելքի և ժողովրդի բարեկեցության աճման նկատմամբ պարտիայի ու կառավարության կողմից ցուցաբերվող անդուլ հոգատարության վառ վկայությունն են։

Հետևողական կերպով, օր-ավուր կենսագործելով գյուղատնտեսության հետագա վերելքի մասին պարտիայի ու կառավարու-



թյան դիրեկտիվները և ընկեր Ստալինի ցուցումները, Սովետական Միության կոլխոզային գյուղացիությունը 1949 թվականին ձեռք բերեց նոր, նշանակալից հաջողություններ գյուղատնտեսության զարգացման հետպատերազմյան ստալինյան հնգամյակը ժամկետից շուտ կատարելու գործում։

Շնորհիվ Սովետական պետության ցույց տված մեծ օգնության և կոլխոզնիկների, ՄՏԿ-ների ու սովխոզների աշխատողների աշխատանքային բարձր ակտիվության, 1949 թվականին գյուղատնտեսական աշխատանքները կատարվեցին ավելի կազմակերպված և ագրոտեխնիկական սեղմ ժամկետներում, քան անցյալ տարիներին։

Հացահատիկային կուլտուրաների համախառն բերքը 1949 թվականին ՍՍՌՄ-ում կազմեց 7,6 միլիարդ փութ, որը գերազանցեց նախապատերազմյան 1940 թվականի մակարդակը 400 միլիոն փթով։ Զգալիորեն գերազանցվել է նախապատերազմյան մակարդակը նաև բամբակի, վուշի, արևածաղկի, կարտոֆիլի համախառն բերքի գծով։

Մեծ հաջողություններ են ձեռք բերվել գյուղատնտեսության մեքենայացման ասպարեզում։ 1949 թվականին մեքենա-տրակտորային կայանները 3—4 անգամ ա-

ավելի շատ տրակտորներ, ավտոմոբիլներ, գյուղատնտեսական մեքենաներ ստացան, քան 1948 թվականին։ 1949 թվականին կոլխոզներում մեքենատրակտորային կայանների կատարած աշխատանքի ծավալը, նախապատերազմյան 1940 թվականի համեմատությամբ, ավելացավ 21 տոկոսով։

Լուրջ հաջողություններ են ձեռք բերվել հանրային անասնաբուծության զարգացման գործում։ Կոլխոզները և սովխոզները այժմ ավելի շատ հանրային մթերատու անասուններ ունեն, քան նախապատերազմյան 1940 թվականին։

Նշանակալից են նաև Հայկական ՍՍՌ կոլխոզային գյուղացիության հաջողությունները։ 1949 թվականին բարձրացավ բամբակի, ծխախոտի, կարտոֆիլի և մի քանի այլ կուլտուրաների բերքատվությունն ու համախառն բերքը։ Բամբակի բերքատվության բարձրացման գործում առանձնապես մեծ հաջողությունների հասան Արտաշատի և Հոկտեմբերյանի կոլխոզները, ծխախոտի բերքատվության ասպարեզում՝ Նոր Բայազետի, Շամշադինի, Միկոյանի, Իջևանի և Կրասնոսելսկի շրջանների կոլխոզները։

Բամբակի բերքատվությունը 1949 թվականին կազմեց հեկտարից միջին հաշվով



22,2 ցենտներ։ Դրա շնորհիվ բամբակի մթերման տարեկան պլանը կատարվեց 120 տոկոսով։ Պետությանը ծխախոտ հանձնելու պլանը ռեսպուբլիկան կատարեց 123 տոկոսով։

Տեխնիկական կուլտուրաների բարձր բերքը ապահովեց կոլխոզների դրամական եկամուտների զգալի աճը։ Կոլխոզները պետությանը հանձնած բամբակի հումքի դիմաց 1949 թվականին ստացան 113,8 միլիոն ռուբլի՝ համարյա երեք անգամ ավելի, քան 1948 թվականին։ Ստացված գումարի մեջ պարգև-հավելումները կազմեցին 41,6 միլիոն ռուբլի։ Հանձնված ծխախոտի դիմաց պետությունից կոլխոզները ստացան մոտ 64 միլիոն ռուբլի, համարյա երկու անգամ ավելի, քան 1948 թվականին։ Ծխախոտի հանձնման պլանի գերակատարման համար կոլխոզները 1949 թվականին ստացան ավելի քան 21 միլիոն ռուբլի պարգև-հավելում։

1948 թվականի համեմատությամբ 1949 թվականին կոլխոզների դրամական եկամուտները ռեսպուբլիկայում ամբողջությամբ վերցրած աճեցին 12,2 տոկոսով։ Դրա հետևանքով բարձրացավ աշխօրի արժեքը։ Միլիոնատեր կոլխոզների թիվը ավելացավ

և հասավ 112-ի՝ 1948 թվականի 73-ի դիմաց։

Անցած տարում զգալիորեն ավելացավ գյուղատնտեսական աշխատանքների մեքենայացումը։ Տրակտորային աշխատանքների ծավալը 1948 թվականի համեմատությամբ աճեց 21,2 տոկոսով։

1949 թվականին ձեռք բերված հաջողությունները արդյունք են այն բանի, որ մեր ռեսպուբլիկայի պարտիական ու սովետական կազմակերպությունները իրենց ամենօրյա աշխատանքում կենսագործել են գյուղատընտեսության հետագա վերելքի և կոլխոզների կազմակերպական-տնտեսական ամրապընդման վերաբերյալ պարտիայի ու կառավարության դիրեկտիվները։

Այս հաջողությունները, սակայն, շատ ավելի մեծ կարող էին լինել, եթե մի շարք կոլխոզներում և շրջաններում ամբողջությամբ վերցրած, գոյություն չունենային մի շարք լուրջ թերություններ գյուղատնտեսական աշխատանքների նախապատրաստման ու անցկացման գործում։ Լուրջ թերությունների թվին պետք է դասել, նախ և առաջ, ցանքի ժամկետների խիստ ձգձգումը, չզտված և ոչ կոնդիցիոն սերմացու ցանելը, գյուղատնտեսական կուլտուրաների վատ



մշակումը, թերություններ, որ թույլ տրվեցին ռեսպուբլիկայի մի շարք կոլխոզներում 1949 թվականին։

Գարնանային գյուղատնտեսական աշխատանքների նախապատրաստման ու անցկացման գործում լուրջ թերություններ կան նաև այս տարի։ Ռեսպուբլիկայի դեռ ոչ բոլոր կոլխոզներն են, որ կատարել են գարնանացան հացահատիկային կուլտուրաների սերմացուի առանձնացման պլանը։ Դանդաղ են կատարվում հասարակ սերմացուի փոխանակումը սորտային սերմացուով, տեղական պարարտանյութերի դաշտ փոխադրումը և հանքային պարարտանյութերի ստացումն ու փոխադրումը։

Լրջորեն հետ է մնում ծխախոտի և բանջարանոցային կուլտուրաների սածիլներ ըստանալու համար ջերմոցներում կատարվող ցանքը, մի հանգամանք, որ կարող է վատ անդրադառնալ դրանց հետագա բերքատվության վրա։ Ջերմոցների ցանքն ուժեղացնելու և անհրաժեշտ քանակությամբ լավորակ սածիլներ պատրաստելու գործին լուրջ ուշադրություն պետք է նվիրեն այդ գործում առանձնապես հետ մնացող Աշտարակի, Բասարգեչարի, Վեդու, Կրասնոսելսկի, Միկոյանի և Թալինի շրջանների կոլ-

խողները։ Այս հետ մնալը հետևանք է աշխատանքի վատ կազմակերպման։ Մի շարք կոլխոզներում բավական մեծ է այն աշխատունակ կոլխոզնիկների թիվը, որոնք չեն կատարել աշխօրերի սահմանված մինիմումը։ Բավականաչափ միջոցներ ձեռք չեն առնվում գյուղատնտեսական արտելի կանոնադրության խախտումներն իսպառ վերացնելու համար։

Լուրջ թերություններ գոյություն ունեն խաղողագործության և պտղաբուծության զարգացման գործում։

Ինչպես հայտնի է, խաղողագործությունը և պտղաբուծությունը մեր ռեսպուբլիկայում գյուղատնտեսության կարևորագույն ճյուղերից են, որոնք իրենց հետագա զարգացման համար ունեն բացառիկ մեծ հեռանկարներ։ Խաղողի ու պտղատու այգիների տարածությունը տարեց-տարի աճում է։ Սակայն այդ ընդարձակմանը չի զուգորդում նրանց բերքատվության բարձրացումը, ընդհակառակը, տեղի ունի բերքատվության իջեցում։

Ընկ. Ա. Ի. Միկոյանը Երևանի Ստալինյան ընտրական օկրուգի ընտրողների 1950 թվի մարտի 10-ի նախընտրական ժողովում արտասանած իր ճառում մատնա-



նշեց խաղողի և պտուղների բերքատվության խիստ հետ մնալը մեր ռեսպուբլիկայում։ Ընկ. Միկոյանն ասաց. «...կան նաև ճյուղեր, որոնց գծով Սովետական Հայաստանը խիստ հետ է մնացել, ինչպես իր հարևան եղբայրական ռեսպուբլիկաներից, այնպես էլ նախապատերազմյան իր սեփական նվաճումներից։ Այսպես, օրինակ, խաղողի և պտուղների բերքատվությունը և պետությանը հանձնելու գործը գտնվում են ցածր մակարդակի վրա և զգալիորեն ավելի պակաս են նախապատերազմյանից»։

Խաղողի և պտղատու այգիներից ցածր բերք ստանալու հիմնական պատճառը սահմանված ագրոտեխնիկական միջոցառումների սիստեմատիկ թերակատարումն է կոլխոզների ու սովխոզների կողմից, աշխատանքի վատ կազմակերպումը և անհրաժեշտ հոգատարության բացակայությունը՝ այգիները լիարժեք դարձնելու գործում։

Այնպիսի կարևոր միջոցառումներ, ինչպիսին են միջշարային մշակումը, հողի պարարտացումը և խաղողի ու պտղատու այգիների բուժումը, անց են կացվում ոչ մեծ տարածությունների վրա և այն էլ ոչ միշտ սահմանված ագրոտեխնիկական ժամկետներում։

Հաճախ բրիգադաների և օղակների կազմը կոմպլեկտավորվում է այգեգործությունից և պտղաբուծությունից քիչ բան իմացող մարդկանցով, նրանց տևական ժամանակով չեն ամրացվում բազմամյա տունկերը, բրիգադաների կազմում գոյություն ունի հոսունություն, այգիների մշակման գործում՝ դիմազրկություն։

Դեռևս լուրջ թերություններ կան մեր ռեսպուբլիկայի անասնաբուծության զարգացման բնագավառում։ Այդ թերությունները նշված են ՍՍՌՄ Մինիստրների Սովետի և ՀամԿ(բ)Պ Կենտկոմի՝ «ՍՍՌՄ Մինիստրների Սովետի և ՀամԿ(բ)Պ Կենտկոմի 1949 թվականի ապրիլի 18-ի «Կոլխոզային ու սովխոզային հանրային մթերատու անասնաբուծության զարգացման եռամյա պլանը (1949—1951 թ. թ.)» որոշման կատարման ընթացքի մասին» որոշման մեջ։ Հայկական ՍՍՌ-ն թերակատարել է խոշոր և մանր եղջերավոր անասունների հանրային գլխաքանակի աճման 1949 թվի պլանը, ինչպես նաև հանրային անասնաբուծության մթերատվության պլանը։

Հայաստանի Կ(բ)Պ Կենտկոմի 5-րդ պլենումը նշեց կոնկրետ միջոցառումներ, որոնց անշեղ կենսագործումը կապահովի գարնա-



նացանի օրինակելի նախապատրաստումն ու անցկացումը, դաշտային կուլտուրաների, խաղողի ու պտղատու այգիների բերքատվության բարձրացումը և հանրային մթերատու անասնաբուծության զարգացման գործի էական բարելավումը։ Կենտկոմի պլենումը կոլխոզների վարչությունների առաջ խնդիր դրեց՝ մոտակա 2—3 տարում պտղատու այգիներ տնկել ռեսպուբլիկայի յուրաքանչյուր կոլխոզում, առնվազն 5—10 հեկտարի չափով։

Կենտկոմի պլենումը մատնանշեց, որ խաղողագործության ու պտղաբուծության հարցերը պետք է շարունակ գտնվեն պարտիական, սովետական կազմակերպությունների և գյուղատնտեսական օրգանների ուշադրության կենտրոնում, այն հաշվով, որպեսզի այդ ճյուղերը ամենակարճ ժամանակամիջոցում առաջ մղվեն ռեսպուբլիկայի գյուղատնտեսության առաջավոր ճյուղերի շարքը։

1950 թվականին բերքատվության հետագա բարձրացման, գյուղատնտեսական բոլոր կուլտուրաների բերքատվությունն ավելացնելու և հանրային անասնաբուծությունն ամեն կերպ զարգացնելու գործում գյուղատնտեսության առաջ դրված խնդիրները հա-

ջողությամբ կատարելու համար, անհրաժեշտ է, նախ և առաջ, անհապաղ վերացնել բոլոր այն թերությունները, որոնք գոյություն ունեն առանձին կոլխոզներում, սովխոզներում և ՄՏԿ-ներում։

Անհրաժեշտ է առաջիկա մի քանի օրում ամենուրեք ավարտել սերմֆոնդի լրացումը, սերմացուի զտումը և ցանքի համար կոնդիցիայի հասցնելը, ծավալել գոմաղբի դաշտ փոխադրման աշխատանքները։ Առանձնահատուկ ուշադրություն պետք է դարձվի ծխախոտի և բանջարանոցային կուլտուրաների սածիլների աճեցմանը՝ խստորեն պահպանելով սահմանված ագրոտեխնիկական ժամկետները, միջոցներ ձեռք առնել կերաբույսերի ցանքի պլանն անպայման կատարելու համար։ Բոլոր աշխատանքներն այնպես պետք է կազմակերպել, որպեսզի ընթացիկ տարվա գարնանացանը կատարվի ամենասեղմ ժամկետներում, ագրոտեխնիկական բարձր մակարդակով։ Միաժամանակ պետք է աշխատանք ծավալվի աշնան ցանքերի խնամքը կազմակերպելու և անցկացնելու միջոցառումների գծով, ապահովելով դրանց սնուցումն ու փոցխումը։ Անհրաժեշտ է միջոցներ ձեռք առնել ավելի ամրապնդելու մշտական արտադրական բրիգադները



դաշտավարության մեջ, որպես կոլխոզներում աշխատանքի կազմակերպման հիմնական ձևի։

Խաղողի և պտուղների բոլոր այգիներում պետք է կազմակերպել շարամեջ տարածությունների համատարած հերկումը կամ փորումը և պարարտացումը։ Անասնաբուծության զարգացման գծով անհրաժեշտ է հասնել այն բանին, որպեսզի լրիվին պահպանվի հասակավոր անասունների գլխաքանակը և ամբողջ մատղաշը, որպես հանրային հոտի վերարտադրության հիմքի, և կերակրումը, խնամքն ու պահպանումը բարելավելու միջոցով խիստ բարձրացվի անասունների մթերատվությունը։

Գյուղատնտեսության վերելքի գործում 1949 թվականին կոլխոզների, սովխոզների և ՄՏԿ-ների ձեռք բերած հաջողությունները հնարավորություն են ստեղծում 1950 թվականին, պարտիայի և կառավարության կողմից ցույց տրվող ամենօրյա օգնությամբ, նոր, խոշոր քայլ անել դեպի առաջ՝ գյուղատնտեսական արտադրանքների հետագա աճեցման ճանապարհին։

Գյուղատնտեսության հետագա վերելքն ապահովելու խնդիրների կատարման գործում մեծ անելիքներ ունեն գյուղական ագի-

տատորները։ Ագիտատորները պետք է կոլխոզնիկներին, սովխոզների և ՄՏԿ-ների աշխատողներին լայնորեն պարզաբանեն այն խնդիրները, որ առաջադրել են պարտիան ու կառավարությունը, նրանց մոբիլիզացնեն գարնանացանը հաջողությամբ անցկացնելու, 1950 թվականին գյուղատնտեսական բոլոր կուլտուրաներից բարձր բերք ստանալու, հանրային անասնաբուծությունն ամեն կերպ զարգացնելու համար։

Անհրաժեշտ է լայնորեն ծավալել սոցիալիստական մրցությունը սոցիալիստական գյուղատնտեսության նորանոր հաղթանակների համար։

Ա. ԱՅՐՈՒՄՅԱՆ
Գյուղատնտեսական գիտությունների թեկնածու

—○—

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

ԼԵՆԻՆ.— Երկեր, 14-րդ հատոր։ Հայպետհրատ, 507 էջ, գինը 8 ռ.։

Ի. Վ. Ստալինի աշխատությունների հայերեն հրատարակությունների բիբլիոգրաֆիա (սովետական շրջան)։ 98 էջ, գինը 3 ռ.։

Պատասխանատու խմբագիր՝ Ռ. ԽԱՉԱՏՐՅԱՆ

ՎՖ 02553 Պատվեր № 234 Տիրաժ 9.450

Հայպոլիգրաֆհրատի վարչության № 2 տպարան, Երևան